Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՅԻՍ 9 1961





Աշխարհում առաջին տիեզերագնաց
ՅՈՒՐԻ ԱԼԵՔՍԵԵՎԻՉ ԳԱԳԱՐԻՆԸ



# ԲԱՑՎԱԾ Է ՏԻԵԶԵՐՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

*Տիեզերքի նվաճման երազանքը իրոք մարդու մեծագույն երազանքներից մեծագույնն է։ Մենք հպարտանում ենք, որ այդ երազանքը , այդ հեքիաթը իրականություն դարձրին սովետական մարդիկ։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Մեր հիասքանչ Հայրենիքում, ամբողջ մարդկության պատմության մեջ կատարվեց չտեսնված սխրագործություն։ Աշխարհում առաջինը տիեզերք թափանցեց սովետական մարդը, կոմունիստ Յուրի Ալեքսեևիչ Գագարինը։ Իրականացավ մարդկության դարավոր երազը։ 1961 թվականի ապրիլի 12-ին «Վոստոկ» տիեզերանավը, որի մեջ գտնվում էր առաջին տիեզերագնաց օդաչու, մայոր Յուրի Գագարինը, բարձրացավ տիեզերք և երկրագնդի շուրջը թռիչք գործելուց հետո հաջողությամբ Հայրենիք վերադարձավ։

Դեպի տիեզերական տարածություն մարդու թռիչքի իրագործումը բացում է մարդկության կողմից տիեզերքի նվաճման հոյակապ հեռանկարներ։ Այդ կապակցությամբ ընկ. Ն. Ս. Խրուշչովը, ողջունելով առաջին տիեզերագնաց օդաչու Յուրի Գագարինին, ասաց. «Ամբողջ սովետական ժողովուրդը հիացած է Ձեր փառապանծ սխրագործությամբ, որը դարերով կհիշեն որպես մարդկությանը ծառայելու արիության, խիզախության և հերոսության օրինակ։ Ձեր կատարած թռիչքը նոր էջ է բացում տիեզերքի նվաճման գործում մարդկության պատմության մեջ և սովետական մարդկանց սրտերը համակում է մեծ բերկրանքով և հպարտությամբ իրենց սոցիալիստական Հայրենիքի համար»։

Սովետական մարդու դեպի տիեզերք կատարած թռիչքը ցույց է տալիս, որ մեր երկիրը հասել է գիտության ու տեխնիկայի բարձր զարգացման։

Բնության ուժերի նկատմամբ մարդու նման անօրինակ հաղթանակ կարող է տեղի ունենալ միայն մեր երկրում՝ հաղթանակած սոցիալիզմի երկրում, որտեղ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վաղուց աշխատավորները փշրել են կապիտալիստական շղթաները, իշխանություն նվաճել և վստահորեն ու համարձակորեն ընթանում են մեծ Լենինի նշած ուղիով դեպի կոմունիզմ։







Փայլուն կերպով իրականացել են Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի հանճարեղ կանխատեսումները, որ միմիայն մարդկանց կապիտալիստական ստրկությունից ազատագրելիս, միայն այն ժամանակ, երբ ժողովուրդը իսկապես կազատագրվի, երբ նյութական և հոգևոր բոլոր հնարավորությունները, բոլոր ուժերը կարելի կլինի ծառայեցնել հօգուտ աշխատավորության, վրա կհասնի մարդկության պատմության նոր դարագլուխը։

«Անցյալում,— ասված է Սովետական Միության Կոմունիստական պարտիային և ժողովուրդներին, բոլոր երկրների ժողովուրդներին և կառավարություններին, ամբողջ առաջադեմ մարդկությանը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության և Սովետական Միության կառավարության դիմումի մեջ,— հետամնաց ցարական Ռուսաստանը չէր կարող անգամ երազել առաջադիմության պայքարում այդպիսի սխրանքներ կատա-

ընելու մասին, տեխնիկա-տնտեսական տեսակետից առավել զարգացած երկրների հետ մրցելու մասին։

Բանվոր դասակարգի կամքով, ժողովրդի կամքով, որոնց ոգեշնչում է Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիան, մեր երկիրը դարձավ հզորազոր սոցիալիստական տերություն, գիտության ու տեխնիկայի զարգացման չտեսնված բարձունքների հասավ։

Երբ բանվոր դասակարգը 1917 թվականի հոկտեմբերին իշխանությունը վերցրեց իր ձեռքը, շատերը, նույնիսկ ազնիվ մարդիկ, կասկածում էին, թե նա արդյոք կարո՞ղ է կառավարել երկիրը, պահպանել էկոնոմիկայի, գիտության և տեխնիկայի զարգացման թեկուզ նվաճված մակարդակը։

Եվ ահա այժմ ամբողջ աշխարհի առջև բանվոր դասակարգը, սովետական կոլտնտեսային գյուղացիությունը, սովետական ինտելիգենցիան, սովետական ամբողջ ժողովուրդը ցուցադրում են գիտության և տեխնիկայի չտեսնված հաղթանակը։ Մեր երկիրն առաջ անցավ աշխարհի մյուս բոլոր պետություններից և առաջինը հարթեց տիեզերքի ուղին»։

Նույն դիմումի մեջ ասված է, որ մեզ՝ կո-



մունիզմ կառուցող սովետական մարդկանց, վիճակվեց առաջինը տիեզերք թափանցելու պատիվը։ Տիեզերքի յուրացման հաղթանակները մենք համարում ենք ոչ միայն մեր ժողովրդի, այլև ամբողջ մարդկության նվաճումը։ Մենք ուրախությամբ դրանք ի սպաս ենք դնում բոլոր ժողովուրդներին, երկրագնդի բոլոր մարդկանց առաջադիմությանը, երջանկությանը ու բարեկեցությանը։ Մեր նվաճումները և հայտնագործությունները մենք ի սպաս ենք դնում ոչ թե պատերազմին, այլ ժողովուրդների խաղաղությանն ու անվտանգությանը։

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, ապրիլի 14-ին առաջին տիեզերագնաց Յուրի Ալեքսեևիչ Գագարինի հանդիսավոր դիմավորման ժամանակ արտասանած իր ճառում ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ մեր կողմից տիեզերքի նվաճումը մարդկության զարգացման հոյակապ ուղենիշ է։

«Այդ հաղթանակի մեջ,— ասաց նա,— ամփոփված է լենինյան գաղափարների նոր հաղթանակ, մարքս-լենինյան ուսմունքի ճշտության հաստատումը»։ Նա հանգամանորեն պարզաբանեց, որ մարդկային հանճարի այդ հաղթանակի մեջ մարմնավորվե-

ցին և իրենց ակնբախ արտահայտությունը գտան այն ամենի փառավոր արդյունքները, որոնց Սովետական Միության ժողովուրդները հասել են Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ստեղծած պայմաններում։ «Այդ սխրագործությունը,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— նշանավորում է մեր երկրի նոր թռիչքը դեպի առաջ, դեպի կոմունիզմը՝ նրա վերընթաց շարժման մեջ»։

Տիեզերքի ճանապարհը բացելու գործում մարդկությանը անգնահատելի ծառայություն մատուցեց սովետական գիտությունը, որը ամենաբարձր զարգացման է հասել աշխարհում։ Մեր երկրում գիտության և տեխնիկայի զարգացումը անսահման հնարավորություն է ստեղծում բնության ուժերին տիրելու և դրանք մարդու բարօրությանը ծառայեցնելու համար։

Մոսկվացիների հետ ունեցած իր հանդիպման ժամանակ առաջին տիեզերագնաց Յուրի Գագարինն ասաց. «Ես ուզում եմ սրտանց շնորհակալություն հայտնել մեր գիտնականներին, ինժեներներին, տեխնիկներին, սովետական այն բոլոր բանվորներին, որոնք ստեղծել են այդպիսի նավ, ո-



րով կարելի է վստահորեն իմանալ տիեզերական տարածության գաղտնիքները»։

Ցնծում է Սովետական երկիրը։ Ամբողջ աշխարհը հիացած է սովետական գիտության համաշխարհային հաղթանակով։ Դեպի Մոսկվա ստեղծվել է սրտաբուխ շնորհավորանքների հոսանք։ Ջերմ ողջույններ են ստացվում աշխարհի բոլոր մասերից, արտասահմանյան պետական գործիչներից։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետին ուղարկած հեռագրում իրենց հիացմունքն են արտահայտում Չեխոսլովակիայի Կոմպարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար, Չեխոսլովակյան Սոցիալիստական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Անտոնին Նովոտնին և չեխոսլովակյան կառավարության նախագահ Վիլյամ Շիրոկին։ Նրանք գրում են, որ սովետական գիտության ու տեխնիկայի, բոլոր սովետական աշխատավորների մեծ հաղթանակը նոր էտապ է բացում մարդու կողմից տիեզերքի նվաճման գործում։

Կուբայի ժողովրդի անունից Ն. Ս. Խրուշչովին ջերմ շնորհավորանքներ է ուղարկել Կուբայի պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրոն։ Թող սովետական ժողովրդի այս

հաղթանակը, ընդգծում է նա, դառնա ամբողջ մարդկության հաղթանակը, որը երկրագնդի բոլոր անկյուններում ողջ մարդիկ ու կանայք ընկալեցին որպես ազատության, բարեկեցության, խաղաղության բախտի ամենամեծ հույս։

Ն. Ս. Խրուշչովին և Լ. Ի. Բրեժնևին ուղարկած շնորհավորական հեռագրում Ինդոնեզիայի Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Սուկառնոն գրում է, որ ինքը համոզված է, թե տեխնիկայի բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ամբողջապես ի սպաս կդրվեն մարդկանց առաջադիմությանը և բարեկեցությանը, ամբողջությամբ վերցրած միջազգային խաղաղությանը։

Սովետական ժողովրդին, անթառամ փառքով օծված հերոս Յուրի Գագարինին, մեր պանծալի գիտնականներին ողջունում ու շնորհավորում են միլիոնավոր մարդիկ։ Տիեզերքի ճանապարհը բացված է, մարդկությունը հավիտյան կհիշի սովետական ժողովրդի մեծ սխրագործությունը։

—◆—

## ՊԱՐՏԻԱՅԻ ԱՄԵՆԱՀԶՈՐ ԵՎ ԱՄԵՆԱՍՈՒՐ ԶԵՆՔԸ

Մայիսի 5-ը սովետական մամուլի օրն է։ Ամեն տարի մեր երկրի աշխատավորները մեծ ցնծությամբ նշում են այդ օրը, իրենց երախտագիտության առաջին խոսքը ուղղելով սովետական մամուլն ստեղծողին ու կազմակերպողին՝ մեր փառապանծ Կոմունիստական պարտիային։

1912 թվականի ապրիլի 22-ին (մայիսի 5-ին) Պետրոգրադում լույս տեսավ բոլշևիկյան «Պրավդա» թերթի առաջին համարը։ Դա մարքսիզմի գաղափարները պրոպագանդող, իր ժամանակին լայն տարածում գտած բանվորական մասսայական օրաթերթն էր։ Չնայած ցարական կառավարության գործադրած դաժան միջոցառումներին ու արգելքներին, «Պրավդան» չէր դադարեցնում իր գործունեությունը և շարունակում էր լույս տեսնել տարբեր անուններով։ 1914 թվականից սկսած թերթի լույս ընծայման օրը՝ մայիսի 5-ը, սահմանվեց որպես բանվորական մամուլի

տոն։ «Պրավդայի» նկատմամբ առանձնակի ուշադրություն և հոգատարություն էր ցույց տալիս Վ. Ի. Լենինը։ Թերթում տպագրված նրա բազմաթիվ հոդվածները ուղղություն էին տալիս պարտիայի աշխատանքներին, ոգեշնչում բանվոր դասակարգին նրա մղած արդար գործի հաղթանակի նկատմամբ։ «Պրավդան» ամուր ու մշտական կապ էր պահպանում բանվորական լայն մասսաների հետ։ Ի դեմս «Պրավդայի» բանվորները տեսնում էին իրենց շահերի կայուն պաշտպանին, իրենց խոհերն ու ցանկությունները արտահայտողին։ «Պրավդան» այն շարժափոկն էր, որ պարտիային շաղկապում էր մասսաների հետ։ Երկու տարվա ընթացքում թերթում հրապարակվեցին 17 հազարից ավելի բանվորական թղթակցություններ ու նամակներ, նրա շուրջը համախմբվեց բանվորական թղթակիցների բազմահազարանոց մի բանակ, որը լենինյան գաղափարները և բոլշևիկյան լոզունգները տարածում էր մասսաների մեջ։ «Պրավդայի» տեսադաշտից դուրս չէր մնում նաև գյուղացիությունը։ Թերթում շատ հոդվածներ էին հրապարակվում գյուղացիական կյանքի ամենահրատապ հարցերի մասին։ «Պրավդան» նշում էր, որ ցարի և ճորտա-



տեր-կալվածատերերի լծից գյուղացիության ազատագրման միակ ելքը՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ պայքարելն է։

«Պրավդայի» լույս ընծայման օրից անցել է ավելի քան 49 տարի։ Այդ ժամանակամիջոցում մեր Հայրենիքը տնտեսապես հետամնաց երկրից վերածվել է առաջավոր ծանր ինդուստրիայի և հզոր ու ծաղկուն գյուղատնտեսություն ունեցող երկրի։ Սովետական մամուլը, հետևելով «Պրավդայի» մարտական տրադիցիաներին, անգնահատելի օգնություն է ցույց տվել պարտիային սոցիալիստական շինարարության ծավալման, աշխատավորների քաղաքական ու արտադրական խանդավառության բարձրացման, նրանց կոմունիստական ոգով դաստիարակելու գործում։

Ոգեշնչված պարտիայի ցուցումներով, այժմ սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ պայքարի է ելել յոթնամյա պլանի հոյակապ խնդիրները անշեղորեն իրագործելու համար։ Մտնելով ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, մեր երկրի աշխատավորները նորանոր պարտավորություններ են ստանձնում ժամկետից շուտ ու բարձր ցուցանիշներով կա-

տարելու յոթնամյակի ծրագիրը։ Այդ ծրագրի հաջող կատարումը էլ ավելի է բարձրացնելու մեր Հայրենիքի տնտեսական հզորությունն ու ժողովրդի կենսամակարդակը։ Ծավալվող սոցիալիստական մրցության մեջ ժողովրդի ընդերքից բարձրանում են նոր, առաջավոր մարդիկ, որոնք իրենց անձնական նախաձեռնություններով, առաջադրանքների բարձր ցուցանիշների կատարմամբ լայն հեռանկարներ են բացում ժողովրդական տնտեսության առաջընթացի գործում։ Դրանք աշխատանքի առաջավորներն են, մեր փարոսները, արդյունաբերության և սոցիալիստական դաշտերի փառաբանված մարդիկ։

Սովետական մամուլը լուրջ աշխատանք է կատարում արտադրության առաջավորների լավագույն փորձի փոխանակման, ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի կողմից առաջադրված մարտական խնդիրները մինչև վերջ ու անշեղորեն կենսագործելու ուղղությամբ աշխատավոր մասսաների ուշադրությունը մոբիլիզացնելու գործում։ Մեր երկրի կյանքում ներկայումս կարևոր իրադարձություն է հանդիսանում հարազատ պարտիայի առաջիկա XXII համագումարի հրավիրումը։ Սովետական ողջ ժողո-



վուրդը անձնվեր աշխատանք է կատարում պարտիայի համագումարը հայրենանվեր գործերով դիմավորելու համար։

Անցած մեկ տարվա ընթացքում մեծ են մեր ժողովրդի ձեռք բերած նվաճումները կուլտուրայի, արվեստի, առանձնապես գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Սովետական գիտության ու տեխնիկայի նոր տրիումֆը հանդիսացավ տիեզերական տարածության նվաճումը սովետական մարդու կողմից։ Սովետական ժողովուրդը անսահմանորեն հպարտ է, որ տիեզերական տարածության նվաճման առաջնությունը և փառքը պատկանում է մեր սոցիալիստական Հայրենիքին։ Ամբողջ աշխարհում առաջինը այդ փառքը նվաճեց Կոմունիստական պարտիայի կողմից դաստիարակված, ժողովրդի արժանավոր զավակ, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության քաղաքացի՝ օդաչու, մայոր Յու. Ա. Գագարինը։

Մեծ բերկրանքով և օրինական հպարտությամբ ՍՍՌՄ Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, Գերագույն Սովետի Նախագահությունը և Սովետական կառավարությունը նշում են, որ մարդկու-

թյան պրոգրեսիվ զարգացման այդ նոր դարագլուխը բաց արեց մեր երկիրը՝ հաղթանակած սոցիալիզմի երկիրը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բացառիկ ուշադրություն և հոգատարություն են ցույց տալիս սովետական մամուլի նկատմամբ։ Տարեցտարի գնալով մեր երկրում լայն ծավալ է ստանում պարբերական մամուլի, ամսագրերի ու գրքերի հրատարակության գործը, բարձրանում է նրանց քաղաքական, իդեական հագեցվածությունը։ Աճում, կոփվում ու նոր կատարելագործում են ձեռք բերում մեր ժուռնալիստական կադրերը։ Խոսելով մամուլի աճման մասին, բավական է ասել, որ ներկայումս Սովետական Միությունում լույս է տեսնում ավելի քան 10 հազար թերթ՝ 68 միլիոն օրինակ միանվագ տպաքանակով. դա ըստ քանակի 10 անգամ և ըստ տպաքանակի գրեթե 19 անգամ ավելի է, քան եղել է 1913 թվականին։ ՍՍՌՄ-ում ներկայումս թերթերը լույս են տեսնում 67 լեզուներով։ Միաժամանակ մեր երկրում այժմ լույս են ընծայվում 908 անուն գրական-գեղարվեստական, քաղաքական, սոցիալ-տնտեսական և այլ ամսագրեր՝ 515 միլիոն օրինակ տարեկան տպա-



քանակով։ Գրքերի հրատարակման ծավալով Սովետական Միությունը գրավում է առաջին տեղը աշխարհում։ 1959 թվականին մեզ մոտ հրատարակվել է 69 միլիոն 72 հազար գիրք՝ մեկ միլիարդ 169 միլիոն օրինակով, 135 լեզուներով։ Գրքերի հրատարակման գործում մեծ տեղ են գրավում մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատությունները։ 1917—1959 թվականների ընթացքում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունները լույս են տեսել 74 միլիոն օրինակ տիրաժով։ Այդ նույն ժամանակամիջոցում Վ. Ի. Լենինի աշխատությունները հրատարակվել են 304,5 միլիոն ընդհանուր տիրաժով, 88 լեզուներով։

Սովետական մամուլը աննախընթաց զարգացում է ստացել նաև Սովետական Հայաստանում։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայում հազարավոր օրինակներով լույս են տեսնում 49 անուն ռեսպուբլիկական քաղաքային և շրջանային թերթ, 17 գրական-գեղարվեստական ու հասարակական, քաղաքական ամսագիր, 41 անուն գործարանային, կոլտնտեսային ու բուհական բազմատիրաժ թերթեր։ Ամեն տարի մեծ տպաքանակով քաղա-

քական, գեղարվեստական, գյուղատնտեսական, գիտա-մասսայական ու այլ բազմաթիվ գրքեր են հրատարակում Հայպետհրատը և ռեսպուբլիկայի մյուս հրատարակչությունները։

***

66 տարի առաջ, 1895 թվականի մայիսի 7-ին ռուս նշանավոր գիտնական Ալեքսանդր Ստեպանովիչ Պոպովը առաջինը ամբողջ աշխարհում հայտնագործեց ռադիոն։ Ի պատիվ այդ գյուտի, մայիսի 7-ը սահմանվեց որպես ռադիոյի օր, որը ամեն տարի սիրով նշում է սովետական ժողովուրդը։ Անցած ժամանակամիջոցում, առանձնապես Սովետական իշխանության տարիներին մեր երկրում անասելի զարգացման է հասել ռադիոն։ Այժմ ռադիոն լայն տարածում է գտել ժողովրդական տնտեսության, գիտության բոլոր բնագավառներում և մարդկանց կենցաղի մեջ։ Պարտիան և կառավարությունը ոչ մի միջոց չեն խնայում մեր երկրի ռադիոֆիկացման, նրա հետագա ծավալման գործում։ Սովետական մամուլն ու ռադիոն հսկայական դեր են կատարում աշխատավորության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, նրանց ուժերը մոբիլիզացնում,





պարտիայի ու կառավարության որոշումները անշեղորեն կենսագործելու համար։ Իզուր չէ, որ պարտիայի մեծագույն առաջնորդ Վ. Ի. Լենինը ռադիոն անվանել է «թերթ, առանց թղթի և առանց տարածության»։

Ռադիոյի զարգացման գործը լայն տարածում է գտել նաև մեր ռեսպուբլիկայում։ Ներկայումս մեզ մոտ ռադիոկետերի թիվը հասնում է ավելի քան 335 հազարի։ Այժմ ռեսպուբլիկայի աշխատավորներն ունեն 153.309 ռադիոընդունիչներ։ Չնայած իր գոյության կարճ ժամանակաշրջանին, աշխատավորության մեջ լայն ընդունելություն է գտել հեռուստատեսությունը։ Ռեսպուբլիկայի բանվոր-ծառայողները այդ ժամանակամիջոցում ձեռք են բերել ավելի քան 43 հազար հեռուստացույց։ Խնդիր է դրված յոթնամյակի տարիներին հեռուստացուցային հաղորդումները հասցնել ռեսպուբլիկայի բոլոր շրջանները։

Սովետական մամուլն ու ռադիոն մեր երկրում ծառայում են աշխատավորության շահերին, խաղաղության պահպանման ու ամրապնդման այն մեծ գործին, որի համար պայքարում են սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդիկ։

Վ. ԲՁՆՈՒՆԻ

# ՊԱՅՔԱՐԻ ՈՒ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ 40 ՏԱՐԻՆ

Գարուն է։ Սովետական Հայաստանը նորից տոնական զարդարանքների մեջ է։ Իր ազատ ու երջանիկ կյանքի քառասուներորդ գարունը բոլորող հայ ժողովուրդը պատրաստվում է մեծ տոնահանդեսների։

Քառասուն տարի՜, քառասուներորդ գարո՜ւն...

Հայաստանի աշխատավորները խոր երախտագիտությամբ են հիշում այն պատմական օրը, երբ Հոկտեմբերյան ազատաշունչ հողմի ալիքները, հասնելով հեռավոր Հայաստան, ամեհի թափով ցրեցին մեր լեռնաշխարհի վրա կուտակված սև-մութ ամպերը։ Լենինյան իմաստությամբ բացվեց հայ ժողովրդի վերածննդի առավոտը, որով սկիզբ դրվեց նրա նոր պատմությանը՝ Սովետական Հայաստանի պատմությանը։

Հիրավի, Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան նախկինում ճնշված բազմաթիվ ժողովուրդների հետ միասին ոտքի



հանեց, վերածննդի, նոր ու ազատ կյանքի կոչեց նաև բազմաչարչար հայ ժողովրդին։ Հայաստանի ապստամբ բանվորները և գյուղացիները Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ ռևոլյուցիոն մարտերում տապալելով դաշնակների արյունոտ բռնապետությունը՝ մեկընդմիշտ ազատագրվեցին սոցիալական և ազգային ճնշումից, սկիզբ դրին իրենց երջանիկ սոցիալիստական կյանքին։

***

Չորս տասնամյակ է անցել այդ օրից։ Իհարկե, դա հայ ժողովրդի բազմադարյան պատմության համար մի ակնթարթ է, սակայն երբ հետադարձ հայացքով չափում ես պայքարի ու հաղթանակների անցած փառավոր ուղին, սիրտդ ուռչում է ուրախությունից և հպարտությունից, մեկ անգամ ևս համոզվում ես, որ այսքան աշխարհաշեն գործեր հնարավոր էր կատարել միայն սոցիալիստական կարգերում, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, իրենց երկրի տերը հանդիսացող սովետական մարդկանց ստեղծարար մտքով ու շինարար ձեռքով։

Այո, երբ այսօր սովետահայ մարդը իր կյանքի լուսավոր բարձունքից մի պահ մտովի տեղափոխվում է ոչ հեռավոր անցյալը, զգում է, որ միայն մի տխուր հուշ է մնացել հայ ժողովրդի ոխերիմ թշնամի դաշնակների տխրահռչակ տիրապետության օրոք ծայրահեղ քայքայման ու ավերածության հասցված նախկին Հայաստանից։ Պատմական կարճ ժամանակամիջոցում Սովետական Հայաստանը, Մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշի ներքո համախմբված սովետական եղբայրական ռեսպուբլիկների համերաշխ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ հասակ է առել, վիթխարի քայլերով առաջ ընթացել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ճանապարհով։ Նա դարձել է բարձր զարգացած սոցիալիստական ինդուստրիայի, մեքենայացված առաջավոր գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկող կուլտուրայի երկիր։

Վերածնված հայ ժողովրդի սոցիալիստական շինարարության տարեգրությունը ըսկըսվեց Վ. Ի. Լենինի՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ըն-



կերներին» ուղղած 1921 թվականի ապրիլի 14-ի պատմական-ծրագրային նամակով, որով նա նորաստեղծ սովետական ռեսպուբլիկների կոմունիստների և բոլոր աշխատավորների առաջ մարտական խնդիր դրեց՝ իսկույն սկսել էլեկտրիֆիկացիայի և ոռոգման խոշոր աշխատանքներ, դրանով իսկ վերաստեղծել, վերածնել երկիրը, թաղել անցյալը, ամրապնդել անցումը դեպի սոցիալիզմ։

Սրբությամբ կենսագործելով լենինյան պատգամները, Սովետական Հայաստանի աշխատավորները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ձեռնամուխ եղան էլեկտրիֆիկացման և ոռոգման աշխատանքներին։ Սանձվեցին, նոր հուն ու ընթացք ստացան մեր լեռնային գետերը, դարեր շարունակ ապարդյուն հոսող ջրերը սովետական մարդկանց կամքով վերածվեցին լույսի ու բարիքի։ Եվ այսօր, երբ հանրագումարի են բերվում հայ ժողովրդի 40-ամյա աշխատանքի ու պայքարի արդյունքները, անհրաժեշտություն է զգացվում գեթ մի քանի համեմատություն կատարել մեր երկրի անդառնալիորեն թաղած անցյալի և լուսավոր ներկայի միջև։ Սո-

վետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են 120 մեծ ու փոքր հիդրոէլեկտրակայան։ Բավական է ասել, որ այժմ մեր ռեսպուբլիկայում միայն մեկ օրում արտադրվում է 1,5 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան արտադրվել է Հայաստանում ամբողջ 1913 թվականին։ Միայն վերջին մի քանի տարում ռեսպուբլիկայի էլեկտրակայանների կարողությունը կրկնապատկվեց նոր գործարկված Գյումուշգէսի, Արզնիգէսի և Աթարբեկյանգէսի հաշվին։ Առաջիկա օրերին շահագործման կհանձնվի Երևանի նոր Հիդրոէլեկտրակայանը։ Երևանում և Կիրովականում սկսվել է բնական գազով աշխատող ջերմաէլեկտրակայանների շինարարությունը, շուտով Որոտան գետի վրա կբարձրանա Տաթևի հսկա հիդրոէլեկտրակայանը։

Սովետական Հայաստանը բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ մեծ չափով առաջ է անցել մի շարք զարգացած կապիտալիստական երկրներից։ Էլ չենք խոսում այն մասին, որ այժմ Հայաստանում տասնապատիկ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան հարևան Թուրքիայում և Իրանում։



էներգետիկ արդյունաբերության զարգացման այսպիսի լայն թափը հնարավորություն տվեց հիմնովին փոխելու երկրի տնտեսական ու կուլտուրական դեմքը։ Նախկինից ժառանգություն մնացած կիսատնայնագործական արհեստանոցների և օտարերկրյա կոնցեսիոներների կողմից ավերված մի քանի ձեռնարկությունների դիմաց մեր մարդկանց ձեռքով կառուցվեցին հարյուրավոր առաջնակարգ ինդուստրիալ ձեռնարկություններ, ստեղծվեցին արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր։ Սովետական Հայաստանը ներկայումս ունի արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպես՝ գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը, մեքենաշինությունը և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, սարքաշինությունն ու շինանյութերի արդյունաբերությունը, լայն պրոֆիլի թեթև արդյունաբերությունը և սննդարդյունաբերությունը, որոնք միավորում են բազմաթիվ ձեռնարկություններ։

Որպեսզի ամբողջական պատկերացում ստանանք այն մասին, թե ինչպիսի վիթխարի զարգացում է ապրել մեր արդյունաբերությունը, բավական է ասել, որ անցած

տարվա համախառն արտադրանքը մոտավորապես 70 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը։ Միայն Երևանի Ստալինյան շրջանը այժմ մեկ օրում թողարկում է կրկնակի անգամ ավելի արտադրանք, քան դաշնակների տխրահռչակ տիրապետության ժամանակ ամբողջ Հայաստանը թողարկում էր մեկ տարում։ Ընթացիկ տարում Սովետական Հայաստանը կթողարկի 2,6 անգամ շատ մետաղահատ հաստոցներ, քան 1913 թվականին թողարկել է ամբողջ ցարական Ռուսաստանը։

Հայաստանի արդյունաբերությունը թողարկում է մոլիբդեն, պղինձ, ալյումին և այլ գունավոր մետաղներ, սինթետիկ կաուչուկ, ավտոդողեր, տարբեր տեսակի էլեկտրալարեր, հանքային պարարտանյութեր, էլեկտրամեքենաներ ու մաթեմատիկական բարդ հաշվի, մեքենաներ, գյուղատնտեսական մեքենաներ ու ավտոպահեստամասեր, ցեմենտ, երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ և այլ շինանյութեր։ Մեծ տեղ է գրավում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։

Տարեցտարի աճում է ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի արտահանությունը։ Ներկայումս Սովետական Հայաստանը իր արդյունաբերական արտադրանքի մոտ 60 տեսա՛կներ է արտահանում ավելի քան 30 արտասահմանյան երկրներ։



Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվեց հայկական գյուղի դեմքը։ Երկրի սոցիալիստական ինդուստրացումը և կոլտնտեսային կարգի հաղթանակը լայն հնարավորություններ ստեղծեցին գյուղատնտեսության զարգացման համար։

Կատարելով լենինյան ցուցումները, Հայաստանի աշխատավորները անցած տարիների ընթացքում կառուցեցին 110 խոշոր ջրանցք, որոնց շնորհիվ ոռոգելի տարածությունը 1919 թվականի 60 հազար հեկտարից հասցվեց 220 հազար հեկտարի։ Գյուղատնտեսական արտադրության մեջ գնալով ավելի ու ավելի լայն կիրառում է գտնում էլեկտրաէներգիան. ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 95 տոկոսը արդեն էլեկտրիֆիկացված է։ Կոլտնտեսություններն ու սովխոզները տարեցտարի հագեցվում են նորագույն տեխնիկայով։

Հայաստանի գյուղատնտեսությունը, ամբողջ երկրի գյուղատնտեսության հետ միասին, բուռն ու շեշտակի վերելք ապրեց հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվա-

կանի Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում։ Մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու և տեխնիկան կոլտնտեսություններին հանձնելու շնորհիվ մեծապես աճեց գյուղատնտեսական մեքենաների օգտագործման արդյունավետությունը և դրանով իսկ բարձրացավ հողագործության կուլտուրան։ Հետևողականորեն շարունակելով ոռոգիչ ցանցի ընդլայնման ուղղությամբ կատարվող աշխատանքները, վերջին տարիներս կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին Թալինի, Արզնի—Շամիրամ ջրանցքների առաջին հերթերը և Կոտայքի ջրանցքը, որոնց կենարար ջրի շնորհիվ ռեսպուբլիկայի նախալեռնային մասի դարավոր խամ ու խոպան հողերը վեր են ածվում ծաղկուն այգեստանների։

Շատ բան է արված տեխնիկական կուլտուրաների, այգեգործության, բանջարաբուծության բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման ուղղությամբ։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և պետական մթերումների պլանը գերակատարելու համար Սովետական Հայաստանը ար-



ժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի։

Հայաստանի ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման գլխավոր արդյունքը հանդիսացավ աշխատավորների նյութական բարեկեցության արմատական բարելավումը։ Դրա ընդհանուր չափանիշը ռեսպուբլիկայի ազգային եկամտի աճն է։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, Հայկական ՍՍՌ ազգային եկամուտը աճեց ավելի քան 40 տոկոսով։

1961 թվականին, ինչպես ամբողջ Միության մեջ, այնպես էլ Սովետական Հայաստանում լրիվին ավարտվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բանվորների ու ծառայողների փոխադրումը յոթժամյա և վեցժամյա աշխատանքային օրվա, ընդ որում առանց աշխատավարձը պակասեցնելու։ Շատ ձեռնարկություններում ու հիմնարկներում կատարվեց աշխատավարձի կարգավորում, որի շնորհիվ բարձրացվեց հատկապես ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը։ Գնալով աճում են կոլտնտեսականների եկամուտները, բարձրանում է աշխատավորների գնողունակությունը, բարելավվում նր-

րանց բնակարանային պայմանները։ Սովետական իշխանության 40 տարում Հայաստանի քաղաքներում և բանվորական ավաններում պետության միջոցներով կառուցվել է 3 միլիոն 323 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որից 233,9 հազարը՝ անցյալ տարի։ Բացի այդ, բնակչությունը իր միջոցներով և պետական վարկի օգնությամբ կառուցել է մեկ միլիոն 559 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որից մոտավորապես 200 հազարը՝ անցյալ տարի։

Խոշոր միջոցառումներ ձեռնարկվեցին ժողովրդական առողջապահության գծով։ Ռեսպուբլիկայի բուժհիմնարկներում աշխատում են մոտ 4 հազար 200 բժիշկ, միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող 20 հազար 793 աշխատող։ Հայաստանում չկա ամենափոքր մի բնակավայր, որը չունենա իր բժշկական կետը։ Բնորոշ է այն փաստը, որ 1913 թվականին եղած 6 հիվանդանոցի դիմաց այժմ գործում է՝ 256-ը։ Եթե Սովետական Հայաստանում յուրաքանչյուր 400 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, ապա հարևան Թուրքիայում և Իրանում 8—10 հազար մարդուն հազիվ ընկնում է մեկ բժիշկ։



Սովետական Հայաստանի 40-ամյա վիթխարի նվաճումներից է Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ հայ ժողովրդի կյանքում կատարված կուլտուրական ռևոլյուցիան։ Իր բազմադարյան պատմության ընթացքում կուլտուրական անբավ արժեքներ ստեղծած հայ ժողովուրդը դաշնակների և իմպերիալիստական տերերի ձեռքով ամբողջովին ֆիզիկական բնաջնջման կենթարկվեր, կկորցներ իր հոգևոր գանձերը, եթե չլիներ ազատարար Հոկտեմբերը։

Ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ մեզ մոտ վաղուց վերացված է անգրագիտությունը։ Իրականացվել է յոթնամյա պարտադիր կրթությունը։ Հայաստանը ծածկված է ուսումնական հաստատությունների խիտ ցանցով։ 1914—1915 թվականների համեմատությամբ ռեսպուբլիկայում միջնակարգ հանրակրթական դպրոցների թիվն ավելացել է 61 անգամ, յոթնամյա և ութամյա դպրոցներինը՝ ավելի քան 100 անգամ։ Նախառևոլյուցիոն Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոց, իսկ այժմ մեր բազմաթիվ միջնակարգ ու մասնագիտական բարձրագույն

դպրոցներում սովորում են 338 հազար ուսանողներ։ Սովետական Հայաստանում ներկայումս յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է բարձրագույն ուսումնական հաստատությունների 105 ուսանող, մինչդեռ Ֆրանսիայում նույնքան բնակչությանն ընկնում է 40 ուսանող, Իտալիայում՝ 34, Արևմտյան Գերմանիայում՝ 31։

Ծաղկում են կուլտուրան և արվեստները, գիտությունն ու տեխնիկան։ Ռեսպուբլիկայի Գիտությունների Ակադեմիան և մյուս գիտական հիմնարկները իրենց բեղմնավոր աշխատանքով օգնում են Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանը, իրենց ավանդը մտցնում սովետական և համաշխարհային գիտության գանձարանը։ Հայաստանի աշխատավորների տրամադրության տակ գտնվում է կինոթատրոնների, գրադարանների, կուլտուրայի պալատների, ակումբների լայն ցանց։ Բնակչության կենցաղի մեջ են մտել ռադիոն և հեռուստատեսությունը։

Հայաստանի 40-ամյակի տոնահանդեսները զուգադիպում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի նախապատրաստությանը։ Դա ավելի է ոգեշնչում հայ ժողովրդին,



նոր թափ ու եռանդ ներշնչում նրա ստեղծարար աշխատանքին։

— Նախահամագումարյան յուրաքանչյուր օրը նշանավորել նոր հայրենանվեր գործերով,— այս նշանաբանով ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունը իր հրաշալի արդյունքներն է տալիս յոթնամյակի երրորդ տարվա խնդիրները ժամկետից շուտ կատարելու գործում։

Ուրախալի է իմանալ, որ Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները 1961 թվականի առաջին եռամսյակի արտադրական առաջադրանքները կատարեցին 107 տոկոսով։ Պլանից ավելի թողարկված է միլիոնավոր ռուբլիների արժողությամբ արտադրանք։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 7,3 տոկոսով։ Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ կիրառված միջոցառումների շնորհիվ զգալի հաջողություններ են ձեռք բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման գործում։

Բերկրալի են նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների ձեռք բե-

րած հաջողությունները։ Զինված ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի ծրագրային որոշումներով, նրանք պարտիական կազմակերպությունների օգնությամբ հաղթահարում են իրենց աշխատանքներում տեղ գտած թերությունները, թափով առաջ են մղում գարնանացանը, պայքարում սոցիալիստական գյուղատնտեսության նոր հզոր վերելքի համար։

Հարազատ պարտիայի XXII համագումարին արժանավայել նվերներ են պատրաստում և դրանով իսկ ռեսպուբլիկայի 40-ամյակը նշանավորում գիտնականները՝ իրենց նոր հայտնագործություններով, ճարտարապետները՝ հոյակապ նախագծումներով, կառուցողները՝ նոր շենքերով, գրողները և նկարիչները՝ մեր կյանքի վեհությունը պատկերող ստեղծագործություններով, արտիստները՝ հոբելյանական նոր ներկայացումներով։

Հայ ժողովուրդը դեպի իր ազգային վերածննդի 40-ամյակն է գնում համախմբված մեր բոլոր հաղթանակները կազմակերպող ու ոգեշնչող հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը։

ԱՐՇ. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ 40 ՏԱՐԻՆ

Իր ազատության և անկախության համար Վրաստանի աշխատավորության մղած պայքարը պսակվեց հաղթանակով. 1921 թվականի փետրվարի 25-ին եղբայրական ռուս մեծ ժողովրդի և հերոսական Կարմիր Բանակի օգնությամբ Վրաստանի աշխատավորները տապալեցին մենշևիկների տիրապետությունը Վրաստանում և հաստատեցին Սովետական իշխանություն։

Սովետական իշխանության հաստատմամբ մեր ռեսպուբլիկայի աշխատավորության համար սկսվեց նոր դարաշրջան՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման դարաշրջանը։

Սովետական Վրաստանի աշխատավորները, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը, մեծ հաջողություններ են ձեռք բերում կոմունիզմի կառուցման ճանապարհին, յուրաքանչյուր տարի նրանք նորանոր հաջողությունների են հասնում։ Յոթնամյակի

երրորդ տարին և նշանավորվում է աչքի ընկնող հաջողություններով։

Գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները մեր ռեսպուբլիկայի աշխատավորներն ընդունեցին որպես գործողության մարտական ծրագիր։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների կենսագործման համար մեծ նշանակություն ունեցավ Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը։ Խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչովի արած քննադատական դիտողությունները և արժեքավոր խորհուրդները օգնեցին բացահայտել գյուղատնտեսության ռեզերվները, գտնել նոր բնագծեր նվաճելու ուղիները, որ նշվել էին ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի կողմից։

Սովետական իշխանության տարիներին վրացական հողի վրա իրոք որ պատմական մեծ վերափոխումներ կատարվեցին։ Եթե մինչ Սովետական իշխանության հաստատումը Վրաստանում գոյություն չի ունեցել արդյունաբերական արտադրություն և միայն տնայնագործությամբ արտադրել են զանազան մանր իրեր, ապա այսօր արտադրվում



են մագիստրալային էլեկտրաքարշեր և բեռնատար ավտոմեքենաներ, ճշգրիտ սարքեր, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, ունիկալ մետաղահատ հաստոցներ, էլեկտրասարքավորումներ, բարդ մեխանիզմներ, ցեմենտ, հանքային պարարտանյութեր, բամբակյա, բրդյա և մետաքսե գործվածքներ, թեյ, պահածոներ և այլն։ Հպարտությամբ կարելի է նշել, որ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1961 թվականի հունվարի մեկի դրությամբ, 1913 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 41 անգամ, այդ թվում ծանր արդյունաբերությանը՝ ավելի քան 115 անգամ։

Մեր ռեսպուբլիկայում մեծ ուշադրություն է դարձվում հզոր էներգետիկ բազայի ստեղծմանը։ Միայն անցյալ տարի Վրաստանի էլեկտրակայաններն արտադրել են 191 անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան 1913 թվականին։ Յոթնամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 2,3 անգամ և կկազմի մոտ 7 միլիարդ կիլովատ-ժամ։

Մեր ռեսպուբլիկան հայտնի է մանգանով, որը ժողովրդի բարօրության համար սկսեց օգտագործվել միայն Սովետական իշխանության տարիներին։ 1920 թվականին արդյու-

նահանվել է ընդամենը 125 հազար տոննա մանգան, իսկ 1960 թվականին՝ մի քանի միլիոն տոննա։ Լայնորեն զարգանում է ածխային արդյունաբերությունը։ Այժմ ռեսպուբլիկայում արդյունահանվում է մի քանի միլիոն տոննա ածուխ՝ 1913 թվականի 70 հազար տոննայի դիմաց։

Արդյունաբերությունը մեծ զարգացում է ապրել Թբիլիսի, Ռուսթավի, Քութայիսի, Բաթումի և այլ քաղաքներում։ Ռեսպուբլիկայում այնպիսի հզոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցումը, ինչպես Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական, Ռուսթավիի մետալուրգիական, ցեմենտի, մեխանիկական և այլ գործարանները, Քութայիսիի ավտոմոբիլային գործարանը, այն էլ ընդամենը մի քանի տարվա ընթացքում, հնարավոր էր միայն Սովետական իշխանության օրոք։

Արագ թափով է զարգանում թեթև, տեքստիլ և սննդի արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկայի յուրաքանչյուր բնակչի հաշվով տարեկան արտադրվում է 2,5 զույգ կաշվե կոշիկ, ընդհանուր հաշվով ավելի քան 10,7 միլիոն զույգ, այն դեպքում, երբ 1927 թվականին արտադրվել է ընդամենը 200 հազար զույգ։ Եթե առաջ ռեսպուբլի-



կայում բոլորովին չի արտադրվել բամբակյա կտորեղեն, իսկ մետաքսյա կտորեղեն արտադրվել է աննշան քանակությամբ, ապա այժմ ամեն տարի թողարկվում է 50 միլիոն մետր բամբակյա, գրեթե 20 միլիոն մետր մետաքսյա և 5 միլիոն մետր բրդյա կտորեղեն։

Համաշխարհային ճանաչման են արժանացել վրացական թեյը, գինիները, կոնյակը և սննդի արդյունաբերության այլ մթերքներ։

Մեծ զարգացման է հասել գյուղատնտեսությունը։ Ընդարձակ տարածություններով ձգված են թեյի և մերձարևադարձային կուլտուրաների պլանտացիաները, խաղողի ու պտղատու այգիները, եգիպտացորենը և տեխնիկական մյուս կուլտուրաները։ Այժմ 1.115 կոլտնտեսություններ, կամ բոլոր կոլտնտեսությունների 54 տոկոսը, և եղած 121 սովխոզները լրիվ էլեկտրիֆիկացված են։ Կոլտնտեսություններում, ՆՏ կայաններում, սովխոզներում աշխատում է ավելի քան 11.200 մասնագետ։ Ռեսպուբլիկայի դաշտերում աշխատում են 7.900 տրակտոր, 1.700 կոմբայն։ Ներկայումս ռեսպուբլիկայում ոռոգվում է 341 հազար հեկտար հող։

Գյուղատնտեսության աշխատավորները

մեծ հաջողությունների են հասել թեյատերևի, խաղողի, մերձարևադարձային կուլտուրաների արտադրության, հացահատիկային կուլտուրաների, այդ թվում եգիպտացորենի մշակման բնագավառում։ Օրինակ, անցյալ տարի պետությանը հանձնվեց չըտեսնված բերք. մոտ 157 հազար տոննա թեյ՝ պլանով նախատեսված 138 հազար տոննայի փոխարեն, և մեր աշխատավորները արժանացան ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ջերմ ողջույնին։

Սովետական իշխանության տարիներին ծաղկեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական վրացական կուլտուրան։ Այժմ մենք ունենք 4.664 հանրակրթական դպրոց, այսինքն՝ յուրաքանչյուր 870 բնակչին մեկ դպրոց։ Դպրոցներում սովորում է 700 հազար մարդ։ Ռեսպուբլիկայում կա շուրջ 60 հազար ուսուցիչ, 18 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնցում սովորում է 56 հազարից ավելի ուսանող։

Ռեսպուբլիկայում կա 3.114 գրադարան, որոնց գրքային ֆոնդը հասնում է 14 միլիոնի, կա նաև 1.935 ակումբ և կուլտուրայի տուն, 20 պետական թատրոն, 64 թանգարան, 1.209 կինոսարքավորում։ Միայն 1959 թվականին Վրաստանում հրատարակվել է



2.191 անուն գիրք՝ 12 միլիոն 810 հազար օրինակ տպաքանակով, 123 անուն ամսագիր և 138 անուն թերթ։

Ռեսպուբլիկայում գործում է Գիտությունների Ակադեմիա և Գյուղատնտեսական գիտությունների ակադեմիա, շուրջ 160 խոշոր գիտական հիմնարկություն։ Գիտաշխատողների թիվը ռեսպուբլիկայում հասնում է մոտ 8 հազարի։

Վրացական և ողջ սովետական կուլտուրայի զարգացման գործում մեծ ավանդ են ներդնում մեր արձակագիրները, նկարիչները և գրականության ու կուլտուրայի մյուս բնագավառների աշխատողները։

Չտեսնված վերելք է ապրում աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Այս մասին է վկայում այն, որ 1959 թվականին ռեսպուբլիկայի բնակչությունը գնել է երկու անգամ ավելի շատ միս, միրգ և բանջարեղեն, 3—4 անգամ շատ յուղ, քան 1940 թվականին։ 1958—1960 թվականներին կառուցվել և շահագործման է հանձնվել մեկ միլիոն 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Վիթխարի են այս հաջողությունները, բայց ավելի հոյակապ է լինելու մեր վաղը։ Վրաստանի աշխատավորները ողջ սովե-

*տական ժողովրդի հետ միասին հաջողությամբ կենսագործում են պարտիայի կողմից մշակված յոթնամյա պլանը, որի մեջ կարևոր տեղ է հատկացված Վրաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանը։ Արդյունաբերական ապրանքների արտադրությունը, 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին կավելանա 75 տոկոսով, կկառուցվեն նոր հզոր հիդրո և ջերմաէլեկտրակայաններ, զգալիորեն կաճի գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, է՛լ ավելի կբարձրանա բնակչության նյութական բարեկեցությունը։*

*Հոկտեմբերի մեծ նվաճումն է Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը, այդ թվում Անդրկովկասյան ռեսպուբլիկաների ժողովուրդների բարեկամությունը։ Այդ բարեկամությունը, ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը, «...աշխատանքի մարդկանց եղբայրական բարեկամություն է, որոնք ունեն ընդհանուր շահեր, ընդհանուր գործ և ընդհանուր նպատակներ։ Մեր բարեկամությունը ոգեշնչում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, նա աճում ու ամրապնդվում է սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում»։*



*Հայաստանի և Վրաստանի ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը գալիս է դեռ հեռավոր պատմական անցյալից։ Բայց նա առանձնահատուկ նշանակություն ու բովանդակություն է ձեռք բերել միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո։*

*Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ Հայաստանում և Վրաստանում դժվար է գտնել մի քաղաք, շրջան, գործարան, ֆաբրիկա, որոնք չմրցեն միմյանց հետ, չօգնեն իրար։ Այս համատեղ պայքարում է՛լ ավելի է կոփվում հայ և վրաց ժողովուրդների բարեկամությունը։*

*Վրաց ժողովուրդը իր մեծ ազգային տոնը դիմավորում է ստեղծագործական ուժերի նոր հզոր վերելքի պայմաններում, աշխատանքային փայլուն նվերներով է պատրաստվում ՍՄԿԿ XXII համագումարին, իր արժանավոր լուման է ներդնում մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։*

Դ. ԿԱԿԱԲԱՁԵ
Վրաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի «Ագիտատորի բլոկնոտ»-ի խմբագիր

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՆ

## (Ազատագրման 16-րդ տարեդարձի առթիվ)

Չեխոսլովակիան էլ մեր Հայրենիքի նման անցյալում բազմիցս ենթարկվել է օտարերկրյա նվաճողների հարձակումներին։ Օրինակ, դեռ 13-րդ դարում նրա բազմաթիվ շեն քաղաքներն ու գյուղերը ավերի մատնվեցին մոնղոլական ամայացուցիչ արշավանքի հետևանքով, իսկ 16-րդ դարում չեխերը հարկադրված եղան կյանքի ու մահու կռիվներ մղել թուրքական զավթիչների դեմ։

Բայց այդ երկրի ժողովուրդների գլխին եկած այս և ուրիշ շատ պատուհասներից ամենասոսկալին հիտլերյան հորդաների կողմից Չեխոսլովակիայի օկուպացումն էր 1939 թվականին։

Հիտլերյան տիրապետության մղձավանջային տարիներին Չեխոսլովակիան ամբողջովին զրկվել էր իր անկախությունից ու անդամահատվել։ Երբեմնի զարգա-



ցած այդ երկրի էկոնոմիկան քայքայման էր հասել, նրա բնական հարստությունները ծառայում էին ֆաշիզմի ռազմական մեքենային, փակվել էին բարձրագույն ուսումնական հաստատությունները, որոնց թվում՝ մոտ 600 տարի գոյություն ունեցած Պրագայի համալսարանը։

Չնայած ամեն տեսակի ճնշումներին, չեխոսլովակյան ժողովուրդը չէր դադարեցնում պայքարը ֆաշիստական ռեժիմից իր ազատագրության համար։

Ֆաշիստական բռնապետությունից իրենց երկիրն ազատագրելու համար չեխոսլովակյան ժողովրդի քաջարի զավակները 1942 թվականին պարտիզանական լայն շարժում ծավալեցին, իսկ հաջորդ տարին հիտլերյան զորքերի դեմ Սովետական Բանակի կազմում կռվում էր չեխոսլովակ խիզախներից բաղկացած մի զորամաս։

1944 թվականին Սովետական Բանակի զորքերը ոտք դրեցին Չեխոսլովակյան հողը, իսկ 1945 թվականի մայիսի 9-ին Սովետական Բանակի զորամասերը մտան նրա մայրաքաղաք Պրագա։

Դա էլ հենց այսօրվա սոցիալիստական բարգավաճած Չեխոսլովակիայի ծննդյան օրն էր։ Ահա թե ինչու է նրա ժողովուրդը

ամեն անգամ այնքան երախտագիտությամբ արտահայտվում Սովետական Բանակի ազատագրական դերի մասին։

Հիտլերականների տիրապետության տարիներին Չեխոսլովակիայի արդյունաբերության արտադրանքը կազմում էր 1937 թվականի մակարդակի միայն 45 տոկոսը, իսկ հացահատիկինը՝ 43 տոկոսը։ Բայց ահա ժողովրդական Չեխոսլովակիայի արդյունաբերության արտադրանքը դեռ 1955 թվականին 2,4 անգամ գերազանցեց 1937 թվականի մակարդակը, իսկ 1960 թվականին նույն 1937 թվականի համեմատությամբ աճեց 4 անգամ, այդ թվում մեքենաշինության արտադրանքը՝ 7 անգամ։ Այս թվերի հետևում պետք է պատկերացնել նախկինում գոյություն ունեցած արդյունաբերական ձեռնարկությունների լիակատար վերակառուցում և նոր կառուցված բազմաթիվ գործարաններ, էլեկտրակայաններ ու հանքահորեր։ Թե ինչ չափով է զարգացել Չեխոսլովակիայի արդյունաբերությունը, ցույց է տալիս այն փաստը, որ 13,5 միլիոն բնակչություն ունեցող այդ երկիրը տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 2 տոկոսը։

1961 թվականին սոցիալիստական Չե-



խոսլովակիան թևակոխել է իր ժողովրդական տնտեսության զարգացման 3-րդ հնգամյակը։

Նախատեսված է այս հնգամյակի վերջում մեքենաշինական արդյունաբերության արտադրանքի մակարդակը 1960 թվականի համեմատությամբ ավելացնել 83 տոկոսով։ Կասկած չկա, որ այդ վիթխարի պլանն էլ կկատարվի, որովհետև նոր հնգամյակում 59 տոկոսով ավելի շատ միջոցներ են ներդրվելու, քան նախորդ հնգամյակում, իսկ արդյունաբերական արտադրության տեմպերը շատ ավելի բարձր են, քան ամենազարգացած կապիտալիստական երկրի՝ ԱՄՆ-ի արդյունաբերության զարգացման տեմպերը։

Էկոնոմիկայի այսպիսի աննախընթաց զարգացման բազայի վրա ավելի կբարելավվեն ժողովրդի կենսապայմանները։ Երկրում կկառուցվի 282 հազար բնակարան։ Աշխատանքի տևողությունը շաբաթական կիջեցվի 42 ժամի, իսկ հանքահորերում՝ 40 ժամի։ Արդյունաբերության մեծ մասում շաբաթ օրը կդարձվի 2-րդ հանգստյան օր։

Այս հնգամյակում կավարտվի դպրոցներում իննամյա պարտադիր կրթության

անցումը, իսկ բարձրագույն ուսումնական հաստատությունները կտան 73.000 շրջանավարտ։

Բայց ո՞ր նվաճումը և առաջիկա ավելի վեհ պլանների ո՞ր ցուցանիշը հիշատակես։

Այժմ սոցիալիստական Չեխոսլովակիան թևակոխել է տնտեսական զարգացման ավելի լայն ճանապարհ։ Այս բանը չեն կարողանում ժխտել նույնիսկ թշնամիները։ Բայց, այնուամենայնիվ, նրանք շարունակում են դավեր նյութել սոցիալիզմի լագերի երկրների դեմ։ Ահա թե ինչու Չեխոսլովակիան, Սովետական Միության նման, կենսականորեն շահագրգռված է իր պաշտպանության ամրապնդման համար։ Սոցիալիզմի երկրների հզոր լագերում ապահոված է նրա խաղաղ զարգացումը։

ՎԼ. ՊՈՂՈՍՅԱՆ

—◆—

Նշումների համար

digitised by A.R.A.R.@

Նշումների համար




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

## ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



# СОДЕРЖАНИЕ

## МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД

Стр.



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ասքանազ Մռավյան.— *Հոդվածներ և ճառեր, 411 էջ, գինը 64 կ.:*

Սերո Խանզադյան.—*Մխիթար Սպարապետ, 841 էջ, գինը 1 ռ. 50 կ.:*

Ժ. Տ. Ճշմարիտյան.— *Դերբայական դարձվածը արդի հայերենում, 81 էջ, գինը 7 կ.:*

Ս. Գ. Սլկունի.— *Ինչպես պաշտպանել երեխաներին ռախիտից և սպազմոֆիլիայից, 19 էջ, գինը 2 կ.:*


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 9 1961 г.**

*ՎՖ 01583 Պատվեր 221 Տպաքանակ 9286*

---

*Հանձնված է արտադրության 15/IV 1961 թ.:*
*Ստորագրված է տպագրության 20/IV 1961 թ.:*

---

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.